ՍՈՒՐԻՈՅ տեղեկատու դիւանը քարտէս մը հրատարակած էր, որուն մէջ Սուրիոյ մաս կը կազմէին Հաթայը (Սանճաք), Ատանան եւ Մերսինը։ Պոլսոյ Ջաֆէր Թերթը կը սպառնայ «խուլէլ» բոլոր տայն քարտէսին հեղինակները։

ՍԱՐԻՔ, Սեւ Ծովու երբեմնի հերոսը որ վտարուեցաւ համայնավար կուսակցութենէն, ծանրապէս հիւանդացած է, ինչպէս կը գրեն տեղական թերթերը։ Շաբաթ օր չաքարախտի ծանր տագնապ մը անցուցած է գաւառական քաղաքի մը մէջ եւ ամբողջ օրը պառկած մնաց օրրաթոռի մը վրայ։ Բժիշկները պատուիրեցին միայն պտուղ եւ պիսկոտ ուտել եւ հանքային ջուր խմել։ Դրամը… կ'ըսեն թէ քաշքշելով կը քալէ, քիչ մը հանգիստ առնելու համար, նիհարցած է եւ ամէն աշխատանք դադրեցուցած։

ԹԷՀԻՐԱՆԷՆ կը հեռագրեն թէ կառավարութիւնը պաշարման վիճակ յայտարարեց Զարմանամ [?] շրջանին մէջ որ Գախթիարի ցեղախումբին… է (հարաւ. Իրան)։ Այս բացառիկ վիճակը պիտի տեւէ երեք ամիս։

ՃԱՄԲՈՒ ԱՐԿԱԾՆԵՐԸ միշտ կ'աւելնան։ Կիրակի օր 16 հոգի մեռան, 12 հոգի վիրաւորուեցան, ինքնաշարժի արկածներու հետեւանքով։

ԵՒՐՈՊԱՅԻ սահմանուած վարկերը պիտի կրճատուին։ Այցըրհաուըր հրամայեց քննել խնդիրը։

## Մեծ պարահանդէս

### ԿՐԸՆՈԲԼԻ ՀԱՅ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

Այս շաբաթ ժամը 21ին, Սէրքըլ Միլիթէրի սրահներուն մէջ, Փլաս Վէրտէօն։

Պատուոյ նախագահութեամբ՝

Mr. le Préfet de l'Isère Roger Ricard

Général Commandant d'Armée Général Humbert

Mr. le Maire de Grenoble Dr. Léon Martin

Նախագահութեամբ Պ. ՏԻՐԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ

Officier de la Légion d'Honneur

Orchestre Vincent Tondo et son ensemble typique

եւ աթրաքսիոններ (հայկ. պար)։

Պիւֆէ եւ անակնկալներ։ Տոմսերը կը ծախուին վարչութեան անդամներու մօտ։

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Տէր եւ Տիկին Երզեան եւ Շէրիտճեան շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց եղբօր՝ ՖՐԱՆԿԻՒԼ ՇԷՐԻՏՃԵԱՆի ղառնաղէտ մահուան առթիւ։

✕ Ֆր. Շէրիտճեանի մահուան քառասունքին առթիւ Տէր եւ Տիկին Երզեան հազար Ֆր. կը նուիրեն Հ. Յ. Դ. Ն. Սերունդի Անիէսի մասնաճիւղին։

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Պ. Յակոբ Գալուստեան, Տէր եւ Տիկին Ալեքսան Գալուստեան եւ զաւակները, Պ. Ե. Գալուստեան, Տէր եւ Տիկին Պր. եւ Գօղոս Տէրվանեան (Ամերիկա), Պ. Յովսէփ Գալուստեան եւ զաւակները (Իսի) իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց կնոջ, մօր եւ ազգականին ՏԻԿԻՆ ԼՈՒՍԻԿ ԳԱԼՈՒՍՏԵԱՆի ղառն մահուան առթիւ։

## Կ'ուզուին

Վիլ-Ժուիֆի մէջ աշխատելու համար կօշիկի մօնթէօր եւ ֆինիսէօր գործաւորներ կ'ուզուին (մոնթաժը 500 ֆրանքի, ֆինիսաժը 300 ֆրանքի)։ Դիմել Պ. Վանլեանի կէսօրէ վերջերը (բացի երկուշաբթիէ եւ չորեքշաբթիէ՝

7 rue Godot de Mauroy Paris (IX) Métro Opéra

Tél. OPE 01 - 08

## ԱԼՔԱԶ ԽԻ ՈՐԴԻ ՏԱՆ ԱՆԱԿՆԿԱԼԸ

Երգապնակներու (տիսք) մեծ հաստատութիւնը, ԱԼՔԱԶ տօնական օրերու առթիւ հրապարակ հանած է «տիսք»երու նոր շարք մը.—

Դերասան ԳՄԲԷԹԵԱՆԻՆ 6 յաւագոյն արտասանութիւնները։

Նոյնպէս ՈՒՏԻ ՀՐԱՆԴԻ հայերէն եւ սօլօ սրբուելեան ոճով երգուած հեղինակութիւնները, 15 տիսք։

Նախորդ հայկ. ժող. երգերու ճոխ մթերքովը ներկայիս մեր երգացանկը բարձրացած է 75ի։ Այս բոլորը կեդրոնացած պիտի գտնէք.—

1.— ԱԼՔԱԶ՝ Մարսէյլ 23 rue St. Barbe (կեդրոնատեղի)։

HATCHERIAN Լիոն, 65 rue Dunoir։

Այս երկու կեդրոնատեղիներուն մէջ «փիկըփ»ներ հաստատուած են։ Փափաքողները կրնան ներկայանալ՝ կատարելու համար իրենց ընտրութիւնը։

## Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.-ի

### ԳԱՐՆԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի 5 Ապրիլ, իրիկուան ժամը 9էն մինչեւ լոյս, Վամփինկի շքեղ սրահներուն մէջ։

Նուագախումբ ՓՕԼ ՄՕՐԻՍ։ Անակնկալներ, Տէֆիլէ տը մանըքէն, քոթիյոն։

Ապահովել սեղանները։ Երեկոյթի զգեստ յանձնարարելի է։

### ԶԱՏԻԿԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Փարիզի Հայ. Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը հրաւիրէ հայ ժողովուրդը ներկայ ըլլալ տօնական օրերու հետեւեալ արարողութիւններուն, որոնք պիտի կատարուին Առաջնորդ Տէր Սերովբէ Ծ. Վ. Մանուկեանի նախագահութեամբ.—

2 Ապրիլ, Աւագ Հինգշաբթի.— Սկիզբ ժամերգ. ժամը 7·30ին, Ս. պատարագ ժամը 10ին, Ոտնլուայ ժամը 16ին, Խաւարման պաշտամունք ժամը 19ին։

3 Ապրիլ, Աւագ Ուրբաթ.— Յիշատակ Չարչարանաց եւ Խաչելութեան, կարգ Թաղման ժամը 17ին։

4 Ապրիլ, Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց Ս. Զատկի, երեկոյեան սկիզբն ժամերգութեան ժամը 15·30ին, Ս. Պատարագ ժամը 10ին։

✕

### ԶԱՏԻԿԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Աւագ հինգշաբթի.— ժամը 10ին, Հաղորդութիւն Մանկանց, Ոտնլուայ ժամը 5ին։ Խաւարում ժամը 7ուկէսին։

Աւագ Ուրբաթ.— Թաղում ժամը 5ին։

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց ժամը 4ուկէսին։

Ս. Զատիկ.— Սկիզբ ժամերգութեանց ժամը 7ին, Ս. պատարագ ժամը 10ին։

Երկուշաբթի Մեռելոցի օրուան պատարագը՝ Զատկին յաջորդ կիրակին (Նոր կիրակի) քահանային հիւանդութեան պատճառով։

✕

### ԶԱՏԻԿԸ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ (ՄԱՐՍԷՅԼ)

(Ս. Լուսաւորիչ եկեղեցի),

Աւագ Հինգշաբթի. ՅԻՇԱՏԱԿ ԸՆԹՐԵԱՑ պատարագ ժամը 10, Հաղորդութիւն բոլոր մանկանց, Ոտնլուայ ժամը 5, գիշերը «Խաւարում» ժամը 7·30, Աւագ Ուրբաթ՝ Կարգ Թաղման ժամը 5, Աւագ շաբաթ՝ Ճրագալոյց Ս. Զատիկ, Խթման արարողութիւն ժամը 4·30, Պատարագ եւ Նախատօնակ ժամը 6։ 5 Ապրիլ Կիրակի՝ Տօն Յարութեան, Հանդիսաւոր Ս. Պատարագ ժամը 10, Երկուշաբթի՝ Յիշատակ Մեռելոց ժամը 8, Պատարագ 10, Հոգեհանգիստ 11·45։ 12 Ապրիլ՝ Յիշատակ մէկ միլիոն նահատակներու։

### ՎԱՐՁՈՒ Է ԸՆԿԵՐՈՎԻ

Աշխատանոց մը, որ ունի կազ, ելեկտր. մեքենայ մը սիւրժէթէօզ, սիւիփրավիթէ եւ հատ մըն ալ փլա կարի մեքենայ մը։ Մէկ հոգիի պատկերու յարմարութիւն։ Դիմել

Gerlinger 17 rue des Petites Ecuries Paris 10e



Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱՊՐԻԼ 11 - 24ի Սզատօնը Վիէնի մէջ, 18 Ապրիլին։

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ 38րդ տարեդարձը Մայիս 10ին Փարիզի մէջ։

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այսօր ժամը 21ին, Քառէ սրճարանին վերնայարկը։ Կը խօսի Պ. ՎՌԱՄ ԳՈՒՑՈՒՄՃԵԱՆ։ Նիւթ՝ «Եւրոպայի կազմակերպութեան հարցերը»։ Մուտքը ազատ է։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Փարիզի Հայ Տիկ. Միութեան քառասնամեայ յոբելեանը Մայիս 10ին, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ։

## Համազգային Մշակ. Միութիւն

(ՄԱՐՍԷՅԼ)

Նոր թափով կը սկսի իր դասախօսութիւններու առաջին շարքը նուիրուած Ապրիլեան մեր մեծ նահատակներուն։

Կը խօսի Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ նիւթ՝ Ռ. Զարդարեան, այս չորեքշաբթի իրիկուն (Շար.)։

Կ. ՓՕԼԱՏԵԱՆ Սիամանթօ եւ Դ. Վարուժան (շար.)։ 8 Ապրիլ Չորեքշաբթի իրիկուն։





ՆԻՍԻ ոստիկանութիւնը ցրուեց 2000 ցուցարարներ որոնք թափօր մը կազմած էին կարմիր դրօշով, բողոքելու համար վերջին ձերբակալութեանց դէմ: Նաւահանգիստի բանուորները գործադուլ սարքած էին 24 ժամուան, երթեւեկի աշխատաւորները՝ երկու ժամուան համար:

Մ. ԹՈՐԷԶ, կինը եւ ընկեր մը անցագիր ստացան վերջապէս եւ Փարիզ կը սպասուին այսօր, շաբաթ, Մոսկուա - Պերլին ճամբով:

ԶՕՐ. ՐԻՃՈՒԷՅ Մարոք պիտի երթայ ապրիլ 10ին, քննելու համար ամերիկեան օդանաւային եւ ծովային խարիսխները: Պիտի քննէ նաեւ ուրիշ ռազմական խնդիրներ՝ Ֆրանսական իշխանութեանց հետ:

ՄԱՕ - ՄԱՕՆԵՐՈՒ շարժումը կը ծաւալի Քենիայի մէջ (արեւելեան Ափրիկէ), մեծ մտահոգութիւն պատճառելով անգլ. իշխանութեանց:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Մարսէյլի Հայ Արենոյշներու եւ Արինեներու տարեկան հանդէսը Մայիս 17ին, կիրակի ժամը ճիշդ 15ին, Գազա տ'Իթալիի մեծ սրահին մէջ:

## Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.-ի

### ԳԱՐՆԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի 5 Ապրիլ, իրիկուան ժամը 9էն մինչեւ լոյս, Վամփիւպի շէնք սրահներուն մէջ:

Նուագախումբ ՓՕԼ ՄՕՐԻԱ: Անակնկալներ, Տէփիլէ տը մանըրէն, քոթիյոն:

Ապահովել սեղանները: Երեկոյթի զգեստ յանձնարարելի է:

ՏԷՍԻՆԻ մէջ Սրբազան թատերգութիւն ՌԱՍԻՆԻ դասական ողբերգութիւնը «ԵՍԹԵՐ»ը (4 արար եւ 1 պատկեր)

Զատկի երկուշաբթին, կէսօրէ ետք ժամը 3ին Տէսինի Հ. Յ. Դ. Ժողովրդային տան սրահին մէջ (Ռիւ Գրանլի), ի նպաստ Լիոնի Ազատ. եկեղեցւոյ շէնքի հիմնադրամին:

Լիոնէն առնել 16 թիւ օթօպիւսը, իջնել վերջին կայարանը:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ
### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԻ ՇԱԲԹՈՒԱՆ

3 Ապրիլ Աւագ Ուրբաթ, ժամը 10 եւ 5.— 4 Ապրիլ Աւագ Շաբաթ, Ճրագալոյց, ժամը 8·30, 4·30, 5·30.— 5 Ապրիլ, Կիրակի Ս. Զատիկ, ժամը 7·30, 10.— 6 Ապրիլ, Բշ., Մեռելոց Ս. Զատկի, ժամը 8, 10, 12.— 12 Ապրիլ, Նոր Կիրակի ժամը 8, 11·30, Սգատօն հայ նահատակներու, մասնակցութեամբ յաքանուանութիւններու: Արարողութիւններուն մեծ մասը կը կատարուի բազմաձայն երգեցիկ խումբով, ղեկավարութեամբ Պ. Վ. Սարգսեանի:

### Հ. Մ. Ը. Մ. ՄԱՐՍԷՅԼ - ԼԻՈՆ - ՏԷՍԻՆ

Զատկի առթիւ բարեկամական մեծ մրցում, 5 Ապրիլ, կիրակի Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ը կը մրցի Լիոն - Տէսին քոյր մարմնամարզականին հետ Սէն Ժիւլիէն (Տէսին) դաշտին վրայ ժամը 15ին:

Բացումը կը կատարեն Լիոն - Տէսինի եւ Մարսէյլի կրտսերները:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Նուպար Մարգարեան եւ զաւակը՝ Խաչիկ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս երկուշաբթի (Բ. օր Զատկի) Փարիզի Հայոց եկեղեցին, (15 րիւ Ժան Կուժօն) իր կնոջ եւ մօր՝

ԱՐԱՔՍԻ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

### ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

Որեւէ ընկերութեան պատկանող նաւով կամ օդանաւով ՃԱՄԲՈՐԴԵԼՈՒ ՀԱՄԱՐ



### ԶԱՏԻԿԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Փարիզի Հայ. Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը հրաւիրէ հայ ժողովուրդը ներկայ ըլլալ տօնական օրերու հետեւեալ արարողութիւններուն, որոնք պիտի կատարուին Առաջնորդ Տէր Սերովբէ Մ. Վ. Մանուկեանի նախագահութեամբ:—

3 Ապրիլ, Աւագ Ուրբաթ.— Երեկոյեան Չարչարանաց եւ Թաղման Կարգ, ժամը 17ին:

4 Ապրիլ, Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց Ս. Զատկի, երեկոյեան ակիզբն ժամերգութեան ժամը 15·30ին, Ս. Պատարագ ժամը 10ին:

5 Ապրիլ, կիրակի.— Ս. Զատիկ, սկիզբ, ժամերգ. ժամը 7·30ին եւ քառաձայն պատարագ ժամը 10ին, ղեկավարութեամբ երաժշտագէտ Պ. Արա ՊԱՐԹԵՒԵԱՆԻ: Կը պատարագէ Սերովբէ Ծ. Վ. ՄԱՆՈՒԿԵԱՆ եւ կը քարոզէ:

6 Ապրիլ, երկուշաբթի.— Բ. օր Զատկի, Յիշատակ Մեռելոց, Ս. պատարագ ժամը 10ին, Յաւարտ պատարագի հոգեհանգիստ ընդհանուր ննջեցելոց:

### ԶԱՏԻԿԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Աւագ Ուրբաթ.— Թաղում ժամը 5ին:

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց ժամը 4ուկէսին:

Ս. Զատիկ.— Սկիզբ ժամերգութեանց ժամը 7ին, Ս. պատարագ ժամը 10ին:

Երկուշաբթի Մեռելոցի օրուան պատարագը Զատկին յաջորդ կիրակին (Նոր կիրակի) քահանային հրաւիրուածութեան պատճառով:

### ԶԱՏԻԿԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ (ՍԱՐՍԷՅԼ)

(Ս. Լուսաւորիչ եկեղեցի),

Աւագ Ուրբաթ՝ Կարգ թաղման ժամը 5, Աւագ շաբաթ Ճրագալոյց Ս. Զատիկ, Աթոռոյ արարողութիւն ժամը 4·30, Պատարագ եւ Նախատօնակ ժամը 6: 5 Ապրիլ Կիրակի՝ Տօն Յարութեան, հանդիսաւոր Ս. Պատարագ ժամը 10, Երկուշաբթի՝ Յիշատակ Մեռելոց ժամը 8, Պատարագ 10, Հոգեհանգիստ 11·45: 12 Ապրիլ՝ Յիշատակ ազգ միլիոն նահատակներու:

### ԶԱՏԻԿԸ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Աւագ շաբթուան եւ Զատկի առթիւ կրօնական արարողութիւնները պիտի կատարէ Վարդան քհնյ. Ճամկոչեան: Աւագ Ուրբաթ թաղում ժամը 5, Աւագ շաբաթ Ճրագալոյցի պատարագը ժամը վեցին, կիրակի պատարագ ժամը տասնին, Երկուշաբթի յիշատակ Մեռելոց ժամը ութին, պատարագ տասնին, հոգեհանգիստ 11·30ին:

## ՄԱՕ պարահանդէս

ԿՐԵՆՈՊԼԻ ՀԱՅ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

Այս շաբաթ ժամը 21ին, Սէրքլը Միլիթէր սրահներուն մէջ, Փլաս Վէրտօն:

Պատուոյ նախագահութեամբ՝

Mr. le Préfet de l'Isère Roger Ricard

Général Commandant d'Armée Général Humber

Mr. le Maire de Grenoble Dr. Léon Martin

Նախագահութեամբ Պ. ՏԻՐԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ

Officier de la Légion d'Honneur

Orchestre Vincent Tonde et son ensemble typique եւ աթրաքսիոններ (հայկ. պար):

Պիւֆէ եւ անակնկալներ: Տոմսերը կը ծախուին վարչութեան անդամներու մօտ:















Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

ները 120 առ հարիւր աւելցած են չորս տարուան մէջ, 1949էն 1953: «Իրաց յեղաշրջումը պէտք ըլլար թուլցնել այդ օրէնքը, այն պատրուակով թէ Իրանը կ'ուզէ բարելաւել միջազգային յարաբերութիւնները, երբ դեռ առանց իրենց բարեխառնութեան չեն ապացուցած կարենալ գործել-րով»:

Ընդհ. քարտուղարը, որ տասը հազար քիլոմեթրի պտոյտ մը կատարած էր Ֆրանսայի եւ Մ. Նահանգներու մէջ, ցաւով դիտել տուաւ թէ շատեր չեն ըմբռներ Ատլանտեան դաշինքին էութիւնը: Իր կարծիքով, եթէ արեւմտեան Եւրոպան կործանի, ռուսական յարձակման մը տակ, Մ. Միութիւնը իր տրամադրութեան տակ պիտի ունենայ միլիոնաւոր գերի-բանուորներ եւ պիտի կազմէ «անյաղթելի շղթայ մը»:

[illegible]

---

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ վարչապետը, որ ամերիկեան նաւ մը նստած է Մ. Նահանգները երթալու համար, յայտարարեց թէ Սարը խնդիրը միայն Ֆրանսայի եւ Գերմանիոյ հետ կապ ունի: «Մ. Նահանգները եւ Մեծն Բրիտանիա իրենց միջնորդութիւնը առաջարկեցին: Մենք ուղղակի բանակցութեան մէջ մտանք ֆրանսական կառավարութեան հետ եւ գրեթէ համաձայներ էինք, երբ Ֆրանսա վերջին պահուն ետ կեցաւ: Կը յուսամ թէ խօսակցութիւնները պիտի վերսկսին մօտերս, գոհացուցիչ կարգադրութեան մը յանգելով»:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ դատական պաշտօնատունը մերժեց վերաքննել Տէր եւ Տրկ. Ռոզէնպէրկի դատը: (Երկուքն ալ մահուան դատապարտուած են, իբրեւ հիւլէական լրտես) — Կէս առ կէս զեղչուեցան փոխադարձ ապահովութեան դաշինքին ամերիկացի պաշտօնեաները, Փարիզի մէջ: Իսկ բուն երկրին մէջ պիտի արձակուին 30 պաշտօնեաներ «Ամերիկայի Ձայնը» վարչութենէն:

ՓԱՐԻԶԻ մէջ բանտարկուած եօթը համայնավարներէն երկուքը, Ա. Թոլէ (քարտուղար Սէնի Անմաւքային) եւ խմբագիր Ժ. Սէօնէց առժամապէս ազատ արձակուեցան: Միւս հինգը՝ միտական պատասխան տրուեցաւ (մէկը՝ «Իւմանիթէ»ի խմբագրապետն է):

ԹՈՒՐՔԻՈՅ վարչապետը եւ արտաքին նախարարը մայիսի առաջին շաբթուն պտոյտ մը պիտի կատարեն Միջին Արեւելքի մէջ, հանդիպելով Պէյրութ, Պաղտատ եւ Դամասկոս: Քաղաքական շրջանակներու մէջ մեծ կարեւորութիւն կ'ընծայեն այս այցելութեան:

---

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ
### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԻ ՇԱԲԹՈՒԱՆ

4 Ապրիլ Աւագ Շաբաթ, Ճրագալոյց, ժամը 3·30, 4·30, 5·30 — 5 Ապրիլ, Կիրակի Ս. Զատիկ, ժամը 7·30, 10 — 6 Ապրիլ, Բշ., Մեռելոց Ս. Զատկի, ժամը 8, 10, 12 — 12 Ապրիլ, Նոր Կիրակի ժամը 8, 11·30, Սգաւոր հայ նահատակներու, մասնակցութեամբ յարանուանութիւններու: Արարողութիւններուն մեծ մասը կը կատարուի քառաձայն երգչախումբով, ղեկավարութեամբ Պ. Վ. Սարգսեանի:

---

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Նուպար Մարգարեան եւ զաւակը՝ Ծաչիկ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս երկուշաբթի (Բ. օր Զատկի) Փարիզի Հայոց եկեղեցին, (15 րիւ Ժան Կուժոն) իր կնոջ եւ մօր՝

ԱՐԱՔՍԻ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

×

Պ. Աբելեան եւ պարագաները կը ծանուցանեն թէ յառաջիկայ երկուշաբթի Մեռելոցի տօնին առթիւ հոգեհանգիստ պիտի կատարուի ողբացեալ ՏԻԿԻՆ ՀԱՆԸՄ ՓԱՓԱԶԵԱՆի եւ ԼԻՒՍԻԱ ԹՕՓԱԼԵԱՆի համար:

Կը հրաւիրուին անոնց յիշատակը յարգողները:

---

Յ. Կ. ԽԱՉԻՆ — Տէր եւ Տիկին Յարութիւն Փափազեան իրենց մօր Այրի Տիկին ԱԳԱԳԻ ՏՈՒՏԻ-ՓԱՓԱԶԵԱՆի մահուան չորրորդ եւ Այրի Տիկ. ԿԻՒԼԻՒԶԱՐ ՈՒՄՈՒՐՇԱՏԵԱՆի մահուան առաջին տարելիցին առթիւ 5000 ֆրանք կը նուիրեն Յր. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին:

Ստանալ նուիրատուէն:

---

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ — Լիոնէն զինուոր Նուպար Այվազեան, Սամսոնցի, մօրը անունը Մարիամ, հայրը՝ Եղնիկ, կորսուած Իզմիրի աղէտին, կը փնտռէ Սէֆէրեան անուն ընտանիք մը՝ որ զինքը խնամած են, կը բնակէին 60, Ավընիւ Հօշ, Պուա Քոլոմպ, (Սէն): Տեղեկացնել Նուպար Այվազեանի, 99, Պ. Ի. Ա. Ժ. Մ. Լ. Սաքոնէյ (Էն):

### ԶԱՏԻԿԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

4 Ապրիլ, Աւագ Շաբաթ — Ճրագալոյց Ս. Զատկի, երեկոյեան սկիզբն ժամերգութեան ժամը 15·30ին, Ս. Պատարագ ժամը 10ին:

5 Ապրիլ, կիրակի — Ս. Զատիկ. սկիզբ ժամերգ. ժամը 7·30ին եւ քառաձայն պատարագ ժամը 10ին, ղեկավարութեամբ երաժշտագէտ Պ. Արա ՊԱՐԹԵՒԵԱՆի: Կը պատարագէ Սերովբէ Ծ. Վ. ՄԱՆՈՒԿԵԱՆ եւ կը քարոզէ:

6 Ապրիլ, Երկուշաբթի — Բ. օր Զատկի, Յիշատակ Մեռելոց, Ս. պատարագ ժամը 10ին, Յաւարտ պատարագի Հոգեհանգիստ ընդհ. ննջեցելոց:

### ԶԱՏԻԿԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Աւագ Շաբաթ — Ճրագալոյց ժամը 4ուկէսին:

Ս. Զատիկ — Սկիզբ ժամերգութեանց ժամը 7ին, Ս. պատարագ ժամը 10ին:

Երկուշաբթի Մեռելոցի օրուան պատարագը՝ Զատկին յաջորդ կիրակին (Նոր կիրակի) քահանային հիւանդութեան պատճառով:

### ԶԱՏԻԿԸ ԳՈՄՈՆԻ ՄԷՋ (ՄԱՐՍԷՅԼ)

(Ս. Լուսաւորիչ եկեղեցի),

Աւագ շաբաթ՝ Ճրագալոյց Ս. Զատիկ, Խթման արարողութիւն ժամը 4·30, Պատարագ եւ Նախատօնակ ժամը 6: 5 Ապրիլ Կիրակի՝ Տօն Յարութեան, Հանդիսաւոր Ս. Պատարագ ժամը 10, Երկուշաբթի՝ Յիշատակ Մեռելոց ժամը 8, Պատարագ 10, Հոգեհանգիստ 11·45: 12 Ապրիլ՝ Յիշատակ մէկ միլիոն նահատակներու:

### ԶԱՏԻԿԸ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Աւագ շաբաթ ճրագալոյցի պատարագը ժամը վեցին, կիրակի պատարագ ժամը տասնին, Երկուշաբթի յիշատակ Մեռելոց ժամը ութին, պատարագ տասնին, հոգեհանգիստ 11·30ին:

---

### Հ. Մ. Ը. Մ. ՄԱՐՍԷՅԼ - ԼԻՈՆ - ՏԷՍԻՆ

Զատկի առթիւ բարեկամական մեծ մրցում, 5 Ապրիլ, կիրակի Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ը կը մրցի Լիոն-Տէսին քոյր մասնաճիւղին հետ Սէն Ժիւլիէն (Տէսին) դաշտին վրայ ժամը 15ին:

Բացումը կը կատարեն Լիոն-Տէսինի եւ Մարսէյլի կրտսերները:

---









## Գեղարուեստական երեկոյթ

Ի ՊԱՏԻՒ «ՀԱՅ-ԲՈՅԺ» ԱՄՍԱԹԵՐԹԻՆ

16 Մայիս, Շաբաթ երեկոյ, Թէաթր տ'Իէնա, Պ. Աշոտ Մալաքեան կը ներկայացնէ իր շարժանկարներէն մին ի ներկայութեան Ֆրանսացի արուեստագէտներու: Մանրամասնութիւնները մօտ օրէն:

---











---

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

կալման հրաման հանուած է, յօդուած մը հրատարակելով «Իւմանիթէ»ի մէջ, կ'ըսէ թէ «Ֆրանսա կը գտնուի եւ շատ հանդիստ է»:

ԵՈՒԳՈՍԼԱՒԻԱ հողերը եւ գիւղերը բարեկարգելու համար համաձայնութիւն մը կնքուեցաւ Մ. Նահանգներուն հետ, որոնք 25.400.000 տոլարի վարկ մը պիտի տրամադրեն: Նոր ծրագրով 15000 ընտանիքներ պիտի տեղաւորուին 60.000 արտավար հողի վրայ:

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ 5000 ուխտաւորներ հետեւեցան «Խաչի ճամբու» թափօրին, Քրիստոսի դատապարտութեան վայրէն, մինչեւ Ս. Գերեզման: Ուխտաւորներուն մէջ կը գտնուէին ներկայացուցիչներ ամէն ազգէ: Իւրաքանչիւր խմբակցութիւն քարոզներ, աղօթքներ եւ երգեր կը լսէր իր մայրենի լեզուով: Երեսուն հոգի երկու խոշոր խաչեր կը կրէին ամբողջ ճամբուն վրայ:

460 ՀՈԳԻ թունաւորուած են Շոլէի մէջ, աւրուած միս՝ ուտելով: Ձերբակալուած են խումբ մը մսավաճառներ որոնք ձիեր եւ ուրիշ անասուններ կը մորթէին գաղտնօրէն:

ՉԻՆԱՍՏԱՆԻ Կառքի արկածները յաճախադէպ դարձած են տօնական օրերու առթիւ:

ԿԻՊՐՈՍԻ թերթերը կը գրեն թէ խուզարկութիւններ կատարուած են Լիբանանի եւ Սուրիոյ սահմանագլուխին վրայ: Պաալպէքի մէջ բռնուած են բազմաթիւ համայնավարական թռուցիկներ, մէկ մասը հայերէն:

ԱՒՍՏՐԻԱՅ նոր վարչապետը, Ռաապ, ըսաւ թէ սիրով կ'ընդունին Զօրսերու ժողովը՝ Վիէննայի մէջ, կնքելու համար հաշտութեան դաշնագիրը:

ԼԱՒԱԽԱՂԱՑ ԿԻՆ ՄԸ տասը մեթր բարձրութենէ ինկաւ ամուսնին թեւերուն մէջ, բայց գլուխը գետին զարնուեցաւ, ծանրապէս վիրաւորուելով (Պովէի մէջ):

ԱՆԳԼԻՈՅ թագուհիին թագադրութեան առթիւ, Խ. Միութեան մարտանաւերն ալ պիտի մասնակցին նաւային հանդէսին:

## PREUVEES

Գրական եւ քաղաքական ամսագրին ապրիլ թիւը, ճոխ բովանդակութեամբ:

Յօդուածներ ունին Ա. Հըքսլի, Մանէս Սփերպեր, (Պաղափարաբանութիւն եւ ճշմարտութիւն), Ֆիլ Խուա (Խօսակցութիւն պարտեալին հետ), Ժան Գասու, Միշէլ Մանոլ, Սթալինի քաղաքական կտակը եւն.:

Քրոնիկներ, գրական, քաղաքական, թատերական եւն.: Տարեկան բաժնեգին 1200 ֆրանք: Հատը 120 ֆրանք: Նմոյշ մը կը ղրկուի ձրի:

Հասցէ.— 41 Ave. Montaigne, Paris (8).

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ԼՈՆՏՈՆ, Թ. Զ.— Ստացանք:

ՍԷՆ ՔԼԷՐ, Մ. Նշ.— 1952 Ապրիլ 8էն:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԸ Զատկական տօնին պատճառով, յառաջիկայ Զորեքշաբթիի իր հաւաքոյթը յետաձգած է յաջորդ Զորեքշաբթիին, 15 Ապրիլ:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Հ. Սահակ վրդ. Տէր Մովսէսեան խորին շնորհակալութիւն կը յայտնէ իր յիսնամեայ յոբելեանին առթիւ ցոյց տրուած մեծ համակրանքին համար փարիզահայ գաղութին կողմէ: Եւ յատկապէս Նախկին Սանուց եւ Բարեկամաց Միութեան այնքան խնամքով կազմակերպած եւ կազմակերպելիք հանդէսներուն համար: Խորին շնորհակալութիւն՝ այդ առթիւ Պ. Աբրահամ Ծինճեանի կողմէ իրեն նուիրած Այվազովսքիի «Վենետիկ» գեղեցիկ նկարին, Պ. Գուլտուքեանի երկու եւ Պ. Աճէմեանի մէկ նկարներուն, ինչպէս նաեւ նախկին Սանուց կողմէ տրուած ոսկերիչին, եւ ուրիշ պատուական ազգայիններուն ըրած նուէրներուն համար: Խորին շնորհակալութիւն Միաբանութեան Գերպ. Աբբահօր եւ նախկին Սանուց Մարսիլիոյ մասնաճիւղին հեռագիրներուն, ինչպէս նաեւ ուրիշ նախկին սաներու եւ բարեկամներու ազնիւ նամակներուն համար, որոնցմով փութացած էին իրենց յարգանքը յայտնել:

ՄԱՐՍԷՅԼԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի վարչութիւնը կը ծանուցանէ հայ երիտասարդութեան թէ 1952-53ի արձանագրութիւնները սկսած են: Փափաքողները դիմեն հինգշաբթի երեկոները, ժամը 8էն 9, իր սովորական հաւաքատեղին:

Նոր անդամները իրենց մուտքին երեք ամիս վերջ քուէարկելու իրաւունք կ'ունենան ըստ կանոնագրի:

ԶԱՏԻԿԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

5 Ապրիլ, կիրակի.— Ս. Զատիկ ակիզբ, ժամերգ, ժամը 7.30ին եւ քառաձայն պատարագ ժամը 10ին, ղեկավարութեամբ երաժշտագէտ Պ. Արա ՊԱՐԹԵՒԵԱՆԻ: Կը պատարագէ Սերովբէ Ծ. Վ. ՄԱՆՈՒԿԵԱՆ եւ կը քարոզէ:

6 Ապրիլ, երկուշաբթի.— Բ. օր Զատկի, Յիշատակ Մեռելոց, Ս. պատարագ ժամը 10ին, Յաւարտ պատարագի Հոգեհանգիստ ընդհ. ննջեցելոց:

## Համազգային Մշակ. Միութիւն

(ՄԱՐՍԷՅԼ)

Նոր թափով կը սկսի իր դասախօսութիւններու առաջին շարքը նուիրուած Ապրիլեան մեր մեծ նահատակներուն:

Կ. ՓՕԼԱՏԵԱՆ Սիամանթօ եւ Դ. Վարուժան (շար.): 8 Ապրիլ Զորեքշաբթի իրիկուն: Ահարոնեան Ակումբ, 26 րիւ տէ Քոնվալէսան:

Հ. Մ. Ը. Մ. ՄԱՐՍԷՅԼ - ԼԻՈՆ - ՏԷՍԻՆ

Զատկի առթիւ բարեկամական մեծ մրցում, 5 Ապրիլ, կիրակի Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ը կը մրցի Լիոն - Տէսին քոյր մասնաճիւղին հետ Սէն Ժիւլիէն (Տէսին) դաշտին վրայ ժամը 15ին:

Բացումը կը կատարեն Լիոն - Տէսինի եւ Մարսէյլի կրտսերները:

## Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.-ի

ԴԱՐՆԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի 5 Ապրիլ, իրիկուան ժամը 9էն մինչեւ լոյս, Վամփինկի շքեղ սրահներուն մէջ:

Նուագախումբ ՓՕԼ ՄՕՐԻԱ: Անակնկալներ, Տէֆիլէ տը մանըքէն, քոթիյոն:

Ապահովել սեղանները: Երեկոյթի զգեստ յանձնարարելի է:



## Գեղարուեստական երեկոյթ

Ի ՊԱՏԻՒ «ՀԱՅ-ԲՈՅԺ» ԱՄՍԱԹԵՐԹԻՆ

16 Մայիս, Շաբաթ երեկոյ, Թէաթր տ'Իէնա, Պ. Աշոտ Մալաքեան կը ներկայացնէ իր շարժանկարներէն մին ի ներկայութեան Ֆրանսացի արուեստագէտներու: Մանրամասնութիւնները մօտ օրէն:



ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Լիոնէն գինուոր Նուպար Այվազեան, Սամսոնցի, մօրը անունը Մարիամ, հայրը՝ Եղիկ, կորսուած Իզմիրի աղէտին, կը փնտռէ Սէֆիլեան անուն ընտանիք մը՝ որ գինքը խնամած են, կը բնակէին 60, Ավընիւ Հօշ, Պաւա Քոլոմպ, (Սէն): Տեղեկացնել Նուպար Այվազեանի, 99, Պ. Ի. Ա. Ժ. Մ. Լ. Սաթօնէյ (Էն):



Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

հարիւրի 1946ին, եւ 12 առհարիւրի 1952–ին: Ութ տարուան մէջ երկուքուկէս մի–լիոնէն իջած է մօտ մէկ միլիոնի: Տար–ուան սկիզբէն «Մը Սուառ» եւ Մոնփէ–լիէի «Հայրենիքի Ձայնը» դադրեցան: Հաւանական է որ ուրիշ թերթեր ալ դադ–րին:

Այսպէս, առանց յիշելու ներքին վէճերը, թերթը կ'եզրակացնէ թէ համայ–նավար կուսակցութիւնը կ'ընկրկի ամէն ճակատի վրայ, եւ կը կորսնցնէ իր այն ազդեցութիւնը, զոր շահած էր 1940 — 1945ին:

---

թշնամիներուն դէմ, մաքառեցաւ մահն աչք առնելով»:

Այդ օրերուն Փարիզի մէջ ալ գտնուե–ցան կարմիր կամ ուղեկից բժիշկներ ո–րոնք ջերմապէս շնորհաւորեցին խորհր–դային իշխանութեան արթնութիւնը ...

× Ցարաբերութեանց բարւոքման տե–սակէտով ուշագրաւ են նաեւ հետեւեալ տեղեկութիւնները.—

1. Տարիներէ ի վեր առաջին անգամ ըլ–լալով Մոսկուայի երգիծաթերթը, «Կրո–կոդիլոս», Ապրիլ 4ին լոյս տեսաւ առանց հակամերիկեան ծաղրանկարի մը: Թեր–թին այս թիւը նուիրուած է միայն Ռու–սիոյ ներքին բարքերուն քննադատու–թեան եւ թեթեւօրէն կը ծաղրէ Անգլիոյ խորհրդարանական սովորութիւնները:

2. Խ. Միութիւնը արտօնեց որ Մոս–կուայի անգլիական եւ ամերիկեան դես–պանութիւնները, որոնք տեղափոխուե–լու հրաման ստացած էին, մնան իրենց նախկին շէնքերուն մէջ:

## ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՆԵՐԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՆ

Մոսկուայի կուսակցական պաշտօնա–թերթը, «Փրաւտա», Ապրիլ 6ի խմբա–գրականին մէջ կը մատնանշէ այն պա–տասխանատուները որոնք այս «դատա–կան սխալը» գործած են: Առաջինը կը կոչուի Ռիւմին, պետական ապահովու–թեան նախորդ նախարարը եւ քննիչ ատ–եանին պետը, որ բանտարկուած է ար–դէն: Թերթը կ'ըսէ թէ «Ռիւմին ժողո–վուրդի քողարկեալ թշնամի մըն էր, որ փոխանակ երեւան հանելու իրական լր–տեսները եւ վնասարարները, ինքն ալ դարձած էր քաղաքական արկածախնդիր մը, կը խարդախէր փաստաթուղթերը, անիրաւաբար կ'ամբաստանէր խորհրդա–յին քաղաքացիները, կը ծաղրէր մարդ–կային իրաւունքը եւ կը բռնաբարէր սահ–մանադրութիւնը»:

Պաշտօնաթերթը ուժգնօրէն կը ձաղկէ նաեւ բուն նախարարը, Ս. Իգնատիեւ, մեղադրելով իբրեւ «քաղաքականապէս կոյր եւ դիւրահաւան»: Բայց չըսեր թէ ինչ եղած է: Իգնատիեւ յաջորդած էր նախարար Աբակումովի, որուն համար անցեալ տարի կ'ըսէին թէ պաշտօնանկ եղած եւ ձերբակալուած է: Ետքոյ մե–ղադրանքներ կ'ուղղէ նախարարութեան այն պաշտօնատարներուն որոնք ուժ սը–ուած են Ռիւմինի գործունէութեան, ինչ–պէս եւ բժշկական յանձնախումբի անդամ–ներուն որոնք մասնակցած էին բժիշկնե–րու գործին քննութեան:

Պաշտօնաթերթը հաստատելէ վերջ թէ բժիշկներուն դէմ եղած ամբաստանու–թիւնները «սուտ զրպարտութիւններ էին պետութեան պարկեշտ եւ յարգելի գոր–ծակիցներու մասին», յարգանքով կ'ոգե–կոչէ Թատերագիր Միխոէլսը, որուն հա–մար ըսեր էին թէ կապի դեր կը կատա–րէր դաւադրութեան մէջ: Եւ կ'եզրա–կացնէ.

— «Ամէն խորհրդային քաղաքացի պի–տի պաշտպանուի Խ. Միութեան սահ–մանադրութեամբ: Պայմաններէն մէկն է այս, որպէսզի Խ. Միութեան ժողովուրդ–ները համախմբուին իրենց կառավարու–թեան շուրջը եւ զօրանան մեր հայրենի–քին ու իր միջազգային հեղինակութիւնը: Հիմա որ ընկերվարութիւնը յաղթական է մեր երկրին մէջ, պէտք է արթուն ըլլանք եւ պահանջենք որ յարգուին մեր օրէնք–ները: Երբ խորհրդային կառավարութիւ–նը բացէ ի բաց կը խոստովանի գործուած սխալները ժողովուրդին առջեւ, կ'ա–պացուցանէ թէ Խ. Միութիւնը մեծ ուժ մըն է եւ թէ կառավարութիւնը կապուած է ժողովուրդին եւ կը վարէ քաղաքակա–նութիւն մը որ ճիշդ ու ճիշդ կը համա–պատասխանէ անոր շահերուն»:

---

ԵԳԻՊՏՈՍԻ վարչապետը հրամայեց մէկ տարի երկարաձգել պաշարման վիճակը, սկսելով Մայիս մէկէն: Այս բացառիկ վի–ճակը եւ գրաքննութիւնը հաստատուած էին 1952 յունուար 26ի անկարգութեանց հետեւանքով:

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՑ վարչապե–տը, Տոքթ. Ատընաուըր Նիւ Եորք հա–սաւ Բշ. օր: Առաջին անգամ է որ գեր–ման վարչապետ մը Հիւս. Ամերիկա կ'այ–ցելէ: Պաշտօնական բանակցութիւնները սկսան երէկ, Ուաշինկթընի մէջ:



## ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՇԱՎԻԼԻ ՄԷՋ

Կ. Խաչի մասնաճիւղին կողմէ իր «Օրհ–ուան առթիւ, Ապրիլ 12, Նոր Կիրակիի օրը, ժամը 4էն մինչեւ կէս գիշեր, Շա–ւիլի քաղաքապետարանի սրահը, rue Saint-Alignan: Գեղարուեստական բաժինին մասնակցութիւնը կը բերէ Ֆր. Կապ. Խա–չի պարախումբը, ղեկավարութեամբ ըն–կերուհի Ալիս Գավէզեանի:



## ԼԻՈՆԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ



## Կ'ՈՒԶՈՒԻ

Երիտասարդ սպասուհի մը ամէն օր–ուան համար միայն: Դիմել Տիկին Խաչբուլեան, 32 rue de Bercy Paris, Փարիզ:



## ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Առնուվիլի մասնաճիւղին, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 4էն 11, Կալմանի սը–րահին մէջ:

Գեղարուեստական խնամուած բաժին:

Հայկական եւ կովկասեան պարեր, Պանեէօ Բաշանի Նոր Սերունդին կողմէ, ղեկավարութեամբ Տիկին Ս. ԹՈՐՈՍ–ԵԱՆի: Նաեւ եւրոպական պարեր:



ԴԱՇՆԱԿԻ ԴԱՍ

Ծանօթ դաշնակահար հայ տիկին մը տրամադիր է դաշնակի մասնաւոր դասեր տալու փոքրերու եւ մեծերու, ամէնէն արդիական դրութեամբ:

Դիմել խմբագրութեան:




Le Gérant : A. NERCESSIAN
Imp. Araxes - 46, rue Richer, Paris


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

•

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ–Եօթնեղբայրեան խումբի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Բացակաները նկատի կ'առնուին:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ ընկերները այս շա–բաթ իրիկուն ժամը 8.30ին Խրիմեան սը–րահը: Ներկայ կ'ըլլան Ֆրանսայի ըն–կերվարականներ:

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ
Ի ՊԱՏԻՒ ՀԱՅ ԲՈՅԺԻ ԽՄԲԱԳՐԻՆ
Շ. ՆԱՐԴՈՒՆԻԻ

16 Մայիս, Շաբաթ իրիկոյ ժամը 8,30ին
Ենայի Թատրոնին մէջ

Տաղանդաւոր բեմադրիչ ԱՇՈՏ ՄԱԼԱՔ–ԵԱՆ պիտի ներկայացնէ իր Փիլմերէն մին: Կը մասնակցին Փրանսացի արուես–տագիտուհիներ:

Մանրամասնութիւնները շուտով:

